


*ՏԱՋԵՏԴԻՆ ՍԵՅՋԱՆՈՎ*
*Կարակալպակյան ժող. բանաստեղծ*

# ՋՐՈՒՅՑ ՀՈՐ ՀԵՏ

— Հայրի՛կ, ե՞րբ պիտի մեծանամ կարգին,
Լուրջ գործեր անեմ ու պետք գամ կյանքին,
Ումի՞ց սովորեմ այդ ամենը, հա՛յր։
— Գրքի՛ց, ի՛մ որդյակ, գրքի՛ց լուսաբար։

— Տափաստաններն եմ ուզում ջրել ես,
Որ ծաղկեն, դառնան այգի ու պարտեզ,
Ումի՞ց սովորեմ անելը այդ, հա՛յր։
— Գրքի՛ց, ի՛մ որդյակ, գրքի՛ց լուսաբար։

— Ես սլանալ եմ ուզում դեպի վեր
Եվ աստղերի մոտ ուղեկցել նավեր,
Ումի՞ց սովորեմ այդ ամենը, հա՛յր։
— Գրքի՛ց, ի՛մ որդյակ, գրքի՛ց լուսաբար։

— Մայր հայրենիքիս երկինքը մաքուր
Ուզում եմ երգել խոսքերով զնգուն,
Ումի՞ց սովորեմ այդ անելը, հա՛յր։
— Գրքի՛ց, ի՛մ որդյակ, գրքի՛ց լուսաբար։

— Ուրիշների պես ուզում եմ ես էլ
Լենինի նման ապրել, աշխատել,
Ումի՞ց սովորեմ այդ ամենը հա՛յր.
— Գրքի՛ց, ի՛մ որդյակ, գրքի՛ց լուսաբար։

*Թարգմ. Մ. ՈՍԿԱՆՅԱՆԻ*

*Ճամբարային կյանք*



# ԵՎ ԴՐՈՇՆԵՐԸ ԽՈՆԱՐՀՎԵՑԻՆ...

Հունիսի 21-ի լույս 22-ի գիշերը «Նաիրիտ» ճամբարում տագնապի շեփոր հնչեց։ Նաիրիտցիները՝ որը հագնվելով, որը հենց այդպես՝ գիշերաշապիկով, վազեցին տողանի հրապարակ։

Հետաքրքիր է, ի՞նչ էր պատահել, ի՞նչ տագնապ կարող էր խանգարել հանքավանյան այս խաղաղ գիշերը։

Տողանի հրապարակում պիոներները դեռ չէին հասցրել ըստ ջոկատների շարվել, երբ բարձրախոսով Լևիտանի խրոխտ ձայնը հայտարարեց գերմանական ֆաշիստների ուխտադրժ հարձակման մասին։ Իհարկե, Լևիտանին 1-ին ջոկատի Կարենն էր նմանակում, բայց այնքան հմտորեն, որ շատ քչերը գլխի ընկան։

Այժմ արդեն տագնապի պատճառը պարզից էլ պարզ էր։

Ճամբարի պետ ընկեր Նալբանդյանը (նա պատերազմի վետերան է և փառքի 3-րդ աստիճանի ու արիության շքանշանակիր) պատմեց Հայրենական պատերազմի մասին։ Երբ ընկեր Նալբանդյանն իր խոսքը վերջացրեց, նվագախմբի նվագակցությամբ դրուժինան երգեց Ալեքսանդրովի «Սրբազան պատերազմը»։

Տողանի հրապարակում սև զգեստներ հագած, ջահերը ձեռքներին կանգնել էին 15 պիոներներ. նրանք խորհրդանշում էին Սովետական Միության 15 հանրապետությունները։ Հետո մեծ հանդիսավորությամբ տողանի հրապարակ բերեցին ընկածներին խորհրդանշող

պսակը՝ հավերժական կրակը վրան: Ջահերի ու դրոշների ուղեկցությամբ ծաղկեպսակը տարան գետափ: Բոլոր դրոշները խոնարհվեցին և հանդիսավոր լռության մեջ Հռիփսիմեն ու Կարենը ծաղկեպսակը իջեցրին ջրերի վրա:

Յան Ֆրենկելի «Կռունկները» երգի հնչյունների տակ հավերժական կրակով պսակը լողաց Մարմարիկ գետն ի վար:

Նաիրիտցիները Մարմարիկ գետի ջրերով իրենց ձայնն էին այսպես ուղարկում ծովերին, օվկիանոսներին, ողջ մարդկությանը, որ իրենք՝ նաիրիտցիները, պատերազմ չեն ուզում, երբե՛ք:

Վերջում, երբ բոլորը կրկին տողանի հրապարակում էին, միասին երգեցին «Հաղթանակի օրը»: Եվ միջոցառումը, որ 1-ին ջոկատի պիոներներն էին նախաձեռնել, այս երգով էլ ավարտվեց:

Լույսն արդեն բացվել էր: Չնայած դեռ բավականին ժամանակ կար արևածագին, արդեն պարզորոշ երևում էին Հանքավանի անդորրության մեջ ուրվագծվող լեռներն ու անտառները:

Արևոտ օր էր սպասվում:



# ՉՈՐՍ ՏԱՐԻ ԱՆՑ

Հետաքրքիր մի ավանդույթ կա «Նաիրիտ» ճամբարում: Յուրաքանչյուր հերթափոխի վերջում խիզախների ջոկատը մի շիշ է տանում ու թաքցնում հանդիպակաց լեռան գագաթին: Շիշն, իհարկե, դատարկ չէ և ամուր փակված է խցանով: Շշի մեջ մի թուղթ կա, ուր այդ հերթափոխից տուն գնացողները գրում են իրենց արած գործերի մասին և այն մասին, թե իրենք

ինչեր չհասցրին անել ու լավ կլիներ, որ փոխարինողները շարունակեին:

Առանձնապես հետաքրքիր է սփյուռքահայ երեխաների 1969 թվականին թաքցրած 22-ի պատմությունը:

Բեյրութում ընթացող քաղաքացիական կռիվների պատճառով, ըսփյուռքահայ երեխաների խմբերը 4 տարի անընդմեջ հայրենիք գալ չկարողացան: Եվ չորս տարի անընդմեջ ճամբարի դիմացի լեռան գագաթին շիշն սպասում էր իր խիզախներին: Եվ երբ 1972 թվականին սփյուռքահայ երեխաների խիզախների խումբը շիշն հայտնաբերեց, նրա մեջ գտնվող թուղթն արդեն խունացել, մագաղաթի տեսք էր ստացել: Սակայն հեշտությամբ կարելի էր կարդալ շիշը թաքցնող երեխաների անուն-ազգանունները ու հայրենիքի մասին գրած նրանց հիացական արտահայտությունները:



# ՍԱԼԲԻԻ ՁՈՒԿԸ

Ավագ մանկավարժ ընկեր Վարսիկը առանձնապես հուզմունքով պատմեց սփյուռքահայ երեխաներից մեկի՝ Սալբի Նալբանդյանի մասին:

Սալբին Ադիս Աբեբայից էր և տարիներ առաջ էր ճանգստացել «Նաիրիտում»: «Երբ երեխաներին տարանք Սևան՝ էքսկուրսիայի, — հիշում է ընկեր Վարսիկը,— Ախթամար ռեստորանում նրանց հյուրասիրեցին իշխան ձկով: Սալբին իր ձուկը այնքան զգուշորեն մաքրա-

զարդեց, որ ոչ մի փուշ չծռվեց, չպոկվեց ու կըմախքը մնաց անվնաս: Նա ամբողջ ճանապարհին կմախքը պահել էր ձեռքերի վրա ու անհանգիստ հետևում էր, որ որևէ բանի չկպչի: Ճամբարում Սալբին հատուկ մի տուփ պատրաստեց ու իր այդ տուփով, ձկան կմախքը տարավ հեռո՜ւ-հեռու՝ իր ապրած երկիրը՝ Ադիս Աբեբա»:

Շուտով ընկեր Վարսիկը Սալբիից նամակ է ստանում: Նա գրում էր, որ իշխանի կմախքը կարողացել է անվնաս տեղ հասցնել: Հայրը կմախքի համար մի գեղեցիկ պատվանդան է պատրաստել, ու այդ անփոխարինելի մասունքը ինքը դրել է իր դաշնամուրի վրա: Ամեն անգամ նայելիս հիշում է Մայր հայրենիքը, Հանքավանի զովաշունչ ձորն ու սիրելի «Նաիրիտը»:

# ՄԱՍՈՒՆՔՆԵՐԸ

«Նաիրիտին» ու Հայաստանին հրաժեշտ տըված բազմաթիվ սփյուռքահայ երեխաներից ընկեր Վարսիկը շարունակում է նամակներ ստանալ: Նրանք գրում են Լևոն Նաջարյանը՝ Կիպրոսից, Միսաք Էքմեքչյանը՝ Հալեպից, Եղիա Մարգարյանը՝ Երուսաղեմից և էլի շատ-շատերը:

Սփյուռքահայ երեխաներին հրաժեշտ տալուց առաջ նրանց նվերներ բաժանելը ճամբարում արդեն դարձել է ավանդույթ:

Նվերի փոքրիկ տուփի մեջ դրված է լինում մի բուռ հող, քարերի մի քանի տեսակներ, ցորենի մի հասկ, մի փունջ անթառամ ծաղիկ, վերջին խարույկից ածուխի մի կտոր և այլն, և այլն:

Նամակները վկայում են, որ այդ նվերները դարձել են անփոխարինելի մասունքներ:

# ԾԼՎԼԻԿՆԵՐԸ

Այսպես անում են «Նաիրիտ» ճամբարի ամենափոքրերին:

Հանքավանի ձորում ծլվլան թռչունները շատ են ու հաճախ է նրանց քաղցրաձայն ժխորը նըմանվում փոքրիկների աղմկոտ խաղերին ու հավաքույթներին: Բացի այդ, փոքրիկները իսկապես որ հիշեցնում են փոքրիկ թռչունների՝ ծըլվըլիկների:

Ծլվլիկների ջոկատը բաժանված է 4 աստղիկ խմբերի և ունի 4 աստղավարներ: Ծլվլիկների կրծքերին կարմիր աստղիկներ կան, իսկ աստղավարները, որոնք ավելի մեծ են, կրում են պիոներական փողկապներ:

Ճամբարում ծլվլիկները ուշադրության կենտրոնում են: Նրանց սպասարկում են առաջին հերթին: Մեծերը քնում են վրանների տակ, իսկ նրանք՝ քարե շենքերում: Մի բան միայն վատ է՝ տողանին մասնակցել չեն թողնում, ասում են պիոներ կդառնաք՝ հետո: Ինչ արած... և ծըլվըլիկները համբերությամբ սպասում են:

Ճամբարում կոնֆետի թղթի թափոն հավաքելու մրցույթ եղավ: Որ ջոկատն առաջին տեղը բռնեց՝ պարգևատրվեց մի ամբողջ ափսե կոնֆետով: Ծլվլիկները հա-

մարյա-համարյա հաղթանակին մոտ էին, բայց...

Ծլվլիկները ճամբարի «Կանաչ դեղատան» բարեկամներն են և հաճախ են գնում ուրց հավաքելու: Մի անգամ ջոկատավարը գովեց նրանց: Իսկ ավելի շատ ուրց հավաքողները արժանացան անհատական գովեստների:

Ծլվլիկների խմբի մեջ քաջեր էլ կան, ինչպես իրենք են ասում՝ «արջ բռնողներ»: Մի անգամ նրանք երկար ժամանակով անհետացել էին: Գնացին փնտրելու և գտան նրանց անտառում: Գնում էին... արջ բռնելու:

Ճամբարում ծլվլիկների համար կարուսել կա, իսկ կարուսելի տեր ու տնօրենը ծլվլիկներից է՝ Գագիկը: Ճամբարում նրան կարուսելի դիրեկտոր են անվանում: Սակայն վերջերս նա իր պարտականություններ ը սկսել է վատ կատարել՝ լուրջ պատճառներ կան: Գագիկը որոշել է դառնալ... թմբկահար: Քայլ անգամ չի հեռանում նըվագախմբի կողքից և նույնիսկ արդեն դիմում է գրել ու տվել նվագախըմբի ղեկավար, կոմպոզիտոր Նուբար Ասլանյանին:

Փորձված բան է: Եթե մեկը շատ է ուզում այս կամ այն մասնագետը դառնալ՝ դառնում է ու լավ է դառնում: Գուցե Գագիկն էլ լավ թըմբկահա՞ր դառնա. ի՞նչ կա որ...

*ՄԽԻԹԱՐ ՈՍԿԱՆՅԱՆ*

## Իրենք իրենց մասին

«Пионер»-ից

# ԻՆՉՈՒ՞ ԵՄ ԲՈԼՈՐԻՆ ՕՏԱՐ

Ինձ թվում է, որ ես ամբողջ կյանքում մենակ կլինեմ: Ես մինչև հիմա ընկերներ չունեմ:

Առաջ մի ընկերուհի ունեի: Նա սովորում էր ուրիշ դպրոցում: Մենք իրար գիտեինք շատ փոքրուց՝ հինգ տարեկանից: Թվում էր, թե մեզ անկարելի էր բաժանել: Բայց ահա նա տեղափոխվեց մեր դպրոցը, և կարծես մենք ընկերներ չենք եղել: Եվ ամբողջ դասարանը, որ լավ էր ինձ հետ, հանկարծ երես դարձրեց ինձանից: Հիմա ես ինձ մենակ եմ զգում, թեև դասարանի աղջիկների մեջ ամենասիրունն եմ, բոլորից լավ եմ հագնվում, տանը ես առանձին սենյակ ունեմ, մագնիտաֆոն ունեմ: Ծնողներս ոչինչ չեն խնայում ինձանից, ես նրանց միակ աղջիկն եմ: Բայց նրանք չեն հասկանում, որ ինձ պակասում է ամենակարեվորը՝ մտերիմ ընկերություն: Ես վաղուց էի ուզում սիրտս մեկնումեկին բացել: Բայց ո՞ւմ: Որոշեցի գրել ձեզ:

ՆԱԴՅԱ Պ.

*Ակտյուբինսկի մարզ, ք. Ալգա*

# ՊԱՐՈՒՍՄՈՒՅՑԸ

Թբիլիսիի հայկական դպրոցների պարուսույց Միքայել Հովսեփյանի սաները բազմաթիվ ելույթներ են ունեցել Վրաստանի, Հայաստանի և Ադրբեջանի համարյա բոլոր քաղաքներում, բազմաթիվ գյուղերում, Վրաստանի և Հայաստանի հեռուստատեսությամբ։

Միքայել Հովսեփյանի ղեկավարած պարի խմբերը յոթ անգամ դարձել են հանրապետական օլիմպիադայի դափնեկիր, արժանացել երկու ոսկե, երկու արծաթե և երեք բրոնզե մեդալների, 82 անգամ պարգևատրվել I, II, և III կարգի դիպլոմներով ու պատվոգրերով։

Ինքը՝ Միքայել Հովսեփյանը, համամիութենական երիտասարդական փառատոնի 1957 թվականի դափնեկիր է և շատ տարիներ ի վեր հանդիսանում է «Սայաթ-Նովա» հայկական ժողովրդական երգի-պարի անսամբլի պարուսույցը։ Նրա սաներից շատերը պարում են Հայաստանում ճանաչում գտած բազմաթիվ անսամբլներում կամ հետևելով իրենց ուսուցչի օրինակին, իրենց փորձն ու վարպետությունն են հաղորդում ավելի կրտսերներին։

*ՄԿՐՏԻՉ ԿՈՐՅՈՒՆ*

## Գարնանը թե շիվ տնկած լինեի

Գարնանը մի շիվ տնկած լինեի,
Շիվը կդառնար ստվերոտ կաղնի,
Ծառի ստվերում ամառվա տապին
Իմ լավ, իմ բարի աննման պապին
Կհանգստանար,
Նոր ուժ կստանար։

Գարնանը մի շիվ տնկած լինեի,
Շիվը կդառնար ստվերոտ կաղնի,
Ծառի ստվերում ամառվա տոթին
Իմ լավ, իմ բարի, աննման տատին
Կհանգստանար,
Նոր ուժ կստանար։

Գարնանը մի շիվ տնկած լինեի,
Շիվը կդառնար ստվերոտ կաղնի,
Իսկ ես էլ մի ժիր գառնարած դառած
Գառներ և ուլեր չորս բոլորս առած՝
Թիկնեի ծառին,
Ածեի շվին...
Ա՜խ, թե որ մի շիվ տնկած լինեի...







Թբիլիսիի մանկական գեղարվեստի դպրոցի սաների աշխատանքներից:

*Լուսանկարները ՏԻԳՐԱՆ ՓԱՇԱՅԱՆԻ*

## ՆԿԱՐՆԵՐ ԿՈՒՅՐ ԵՐԵԽԱՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Վարշավայի «Զապեցեկ» գեղարվեստական ցուցասրահում բացվեց ցուցահանդես, նախատեսված հատկապես կույր երեխաների համար:

Ցուցահանդեսը բացվեց լեհ նկարիչ Ռիշարդ Վինյարսկու նախաձեռնությամբ, որը ցուցահանդեսին մասնակցելու էր հրավիրել տարբեր երկրների 42 նկարիչների:

Նրա կարծիքով, նկարիչները երեխաներին հետաքրքիր ստեղծագործություններ նվիրեցին: Օրինակ, Կրակովցի նկարիչ Կրաշինսկին ստեղծել էր բարձրաքանդակ նկար: Մեկ ուրիշ լեհ հայտնի նկարիչ՝ Ստաժևսկին, ստեղծեց նկար, ելնելով փոքրիկ կույր այցելուների մատների գերզգայնությունից:

Հաճախ, տպավորություններ արտահայտելիս, այդ երեխաները օգտագործում էին «տեսնում եմ» բառը:

Վարշավայի ցուցահանդեսը ապացուցեց, որ գեղանկարչության երկրպագուների շրջանակը շատ ավելի լայն է, քան կարծում էին մինչև օրս: Կույր երեխաները նկարիչներից նոր գործեր են սպասում, որոնք նրանց համար ճանապարհ կբացեն դեպի գեղանկարչական արվեստը:




# ՎԱԼԻԱՅԻ ԿԱՐՄԻՐ ՊՈՆՉՈՆ

Արտեկի չինջ և խաղաղ երկնքի տակ անհնար է պատկերացնել, որ այս ուրախ աղջնակը իր հայրենիքում, բանվորական ցույցերի մասնակցելու համար, իր ընկերուհիների հետ բանտ է ընկել:

— Ինչո՞ւ են ձեր ծնողները ձեզ իրենց հետ տանում, եթե դա վտանգավոր է,— հարցրի:

— Մի՞թե դա վտանգ է,— ժպտաց աղջիկը,— երեխաներին բանտում մեկ շաբաթից ավելի չեն պահում: Իսկ մեծերի համար դա իսկապես վտանգավոր է:

Արտեկ մեկնելուց առաջ Վալիան թռուցիկներ էր բաժանում Գրաուի հրապարակում: Այնտեղ ասված էր, թե երբ և որտեղ տեղի կունենա «ձախ ուժերի բլոկի» միտինգը: Վալիային և նրա ընկերուհուն ընկերները չթույլատրեցին մասնակցել այդ միտինգին, որովհետև արդեն հայտնի էր, որ երկու օր հետո աղջիկները պետք է Արտեկ թռչեն Լիմա-Հավանա-Լյուքսեմբուրգ-Մոսկվա երթուղով: Իսկ միտինգում նրանք կարող էին ոստիկանության ձանկն ընկնել:

Վալիան նաև ասաց, որ երեխաները միշտ չէ, որ զբաղվում են նման վտանգավոր գործով: Սովորաբար նրանք շաբաթ օրերը հավաքվում և երգեր են սովորում, համերգներ տալիս, պլակատների մրցույթ հայտարարում:

— Ահա, սա ընկերուհիս է, նույնպես Լիմայից՝ Սեսիլիա Կոնդորը: Սեսիլիան նկարել է Պերուի պիոներական

## Իրենք իրենց մասին

# ԱՍՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ ՄՆԱՑ ԳՐՔԵՐՈՒ՞Մ

**Գարուն էր, անցնում էի գբոսայգով: Այնքան լավ էր, աղմկալից փողոցներից հետո, քայլել ծառուղիներով և ճռնճռունների ուրախ ձայներն ունկնդրել: Տրամադրությունս բարձր, գնում էի: Մեկ էլ տեսա ծառերի հետևից գողեգող ճյուղերին են նայում մի քանի պատանեկան հասակից դուրս եկած տղաներ: Երբ մի ճնճղուկ էր ծառին հայտնվում, իսկույն նշան էին բռնում պարսատիկներով:**

կազմակերպության 8-րդ տարեդարձին նվիրված ամենալայն պլակատը, որի վրա դրոշակներով երեխաներ են պատկերված, իսկ դրոշակի վրա գըրված է՝ «Ապագան մերն է, այն սոցիալիստական կլինի»: Նրա պլակատն արդեն տպարանական եղանակով բազմացված և ուղարկված է երկրի գավառները: Մեզ մոտ պիոներները դեռ քիչ են, պետք է բացատրել մարդկանց, թե դա ինչ կազմակերպություն է, ինչպես է օգնում կոմունիստներին:

Երեխաները շատ աշխատեցին հատկապես պրեզիդենտական ընտրություններից առաջ, երբ հետադիմական ուժերի դեմ պայքարը սրված էր: Լիմայում պրեզիդենտի տեղի համար տարբեր կուսակցություններից առաջադրվող թեկնածուների օգտին ագիտացիա մղող պլակատներն ու թռուցիկները կարելի է փակցնել խստորեն որոշված տեղերում: Աջ կուսակցությունները ջանացին օր առաջ գրավել այդ տեղերը, որպեսզի զրկեն «ձախերին» ռեկլամելու հնարավորությունից:

Վալիան և իր ընկերուհիները ստիպված եղան պլակատները փակցնել չթույլատրված տեղերում: Գիշերը: «Երեխաների համար դա ավելի հեշտ է, քան մեծերի, երեխաներին ոչ բոլոր ոստիկաններն են բռնում,— բացատրում են նրանք:— Երբ Ֆաննի Զավեսը չկարողացավ փախչել, մենք համոզեցինք բաց թողնել Ֆաննիին: Նա այնքան փոքր ու կարճլիկ է, նրան խղճացին»:

Իհարկե, պլակատ փակցնողները գիշերը չեն հագնում իրենց վառ պոնչոները ու սպիտակ փողկապները: Բայց բողոքի ցույցերի և իշխանությունների կողմից թույլատրված համերաշխության միտինգների ժամանակ պիոներական վառ հագուստն անմիջապես աչքի է ընկնում: Ոչինչ որ առայժմ Լիմայում այնքան էլ շատ չեն այդ վառ պոնչոները: Եվ դեռ հնարավոր չէ դրանք հաճախ կրել: Բայց իզուր չէ Սեսիլիան գրել իր պլակատի վրա՝ «Ապագան մերն է»: Դրանում համոզված են և՛ Վալիան, և՛ Պերուի բոլոր երեխաները, որոնք քաջաբար են կրում իրենց պիոներական փողկապները:

*Թարգմ. Ա. ՄԱՆԱՍՅԱՆԻ*

---

**Մարդիկ նրանց կողքով անցնում էին ու կարծես չէին նկատում:**

**Մոտենում եմ և ասում.**

**— Տղաներ, պետք չէ, մեղք են...**

**Նրանցից մեկը արագ թեքվում է դեպի ինձ և պատասխանում.**

**— Քո ի՞նչ գործն է, թե ինչ ենք անում: Սրա՞ն մի տեսեք: Գլխներիս հսկիչ է հայտնվել:**

**Դուրս եմ գալիս այգուց, բարձրանում եմ ավտոբուս: Կ ա ն ա յ ք կանգնած են, երիտասարդները նստած, ծխելով զրուցում են, զրույցին ուղեկցում է հայհոյանք, մինչդեռ կողքերին կանայք ու աղջիկներ կան: Երբեմն էլ ծաղրի են ենթարկում սրան ու նրան:**

**— Պա՞հ-պա՞հ, սրա՞ն մի տեսեք, մինչև տալոն չծակի, ավտոբուսից չի իջնի:**

**Այսպիսիների կարծիքով թույլերին ծեծելը, մեծերի նկատմամբ հարգանքով չլինելը, հրմշտոցը, սպառնալը քաջություն է, որ ցուցադրում են իրենք: Մի՞թե ասպետության մասին մենք այլևս միայն գրքերում պետք է կարդանք:**

*ՆԵԿՏԱՐ ԼԵՎՈՆՅԱՆ*
*Երևանի 134 դպր.,*
*10-րդ դասարան*

# ԶՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*
*բանասիրության դոկտոր*

## 50. ԱՅՆ ԻՆՉՆ Է, ՈՐ ԲԱՆԱՎՈՐ ԽՈՍՔՆ ՈՒՆԻ, ԳՐԱՎՈՐԸ՝ ՈՉ, ԿԱՄ՝ ՀՆՉՈՂ ԽՈՍՔԻ ԱՌԱՎԵԼՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Ամերիկացի լեզվաբան Ֆրանկլին Ֆոլսոմը խոսքի գյուտը համարում է հրաշքի պես մի բան. «Ձայնով, որ հնչելուն պես իսկույն չքանում է, կարելի է քար ասել և հասկանալ քար՝ այնքան ծանր ու կարծր: Այն մարդիկ, որ դա հորինել են, լեզվի մեծագույն գաղտնիքն են հայտնագործել»:

Ընդամենը երեք հնչյուն ենք արտաբերում և հասկանում ենք քար: Եթե նույն հնչյունները այլ կերպ դասավորենք և ասենք րաք՝ ոչինչ չենք հասկանա: Հնչյունները պետք է կապակցվեն այնպես, ինչպես հայախոս մարդիկ «պայմանավորվել» են, և մեր պատկերացմամբ քար բառը «շատ նման է» քարի: Իրո՞ք այդպես է: Իհարկե, ոչ: Ռուսախոս մարդու պատկերացմամբ էլ камень բառն է «քարի նման»:

Ինձ թվում է ոչ մի բառ այնքան «նման չէ» հրդեհի, որքան հրդեհ բառը, բայց իմանալով ռուսերեն, կարող ենք ասել, որ пожар բառն էլ «շատ նման է» հրդեհի: Եթե մենք չիմարեն էլ իմանայինք, մեր աչքում շիխո բառը «նման կլիներ» հրդեհի, ինչպես ֆրանսախոս մարդու պատկերացմամբ էնսանդի, անգլախոսի համար՝ ֆայէ, ճապոնախոսի համար՝ կաձի բառերը, մինչդեռ մեր հրդեհ-ը նրանց ոչինչ չի ասի:

Ինչպե՞ս են նախապատմական ժամանակներից ի վեր գոյացել ու կազմավորվել հնչյունային իմաստավորումները, ամեն մի լեզվին հատուկ հնչյունային և քերականական համակարգերը: Սրանք հարցեր են, որ զբաղեցնում են գիտնականներին, առիթ տալով վեճերի, ամենատարբեր տեսակետների ու կարծիքների բախման:

Անվիճելի է այն, որ նախ բանավոր լեզուն է ստեղծվել, ապա գրավորը և այն էլ՝ բանավորից շա՜տ և շատ դարեր անց: Գրավորը,— բացատրում է լեզվաբան Լև Ուսպենսկին,— արվեստական լեզու է, մարդը դա հորինել է գիտակցաբար, ինչպես անիվն ու լծակը, նետն ու աղեղը, կացինն ու նավակը: Գրավոր լեզուն առանց մեծերի օգնության անհնար է իմանալ, մինչդեռ

բանավորը երեխան սովորում է բնականաբար, ինքնիրեն, առօրյա կյանքում:

Ուրեմն, այլևս ի՞նչ մտահոգություն, դեռ մանուկ հասակից բոլորս էլ խոսել գիտենք: Ճիշտ է, բոլորն էլ խոսել գիտեն, բայց որքա՞ն մեծ տարբերություն կա նրանց խոսելու միջև՝ ամենաորակյալից մինչև ամենացածրորակը: Եվ ինչու՞ մինչտարբերություն կա նրանց խոսելու մյուսը՝ վատ: Կարծում եք դյուրի՞ն բան է՝ խոսել այնպես, որ ձեր խոսքը լինի բարեհնչուն, հստակ, կենդանի ու բնական և հարուցի լսողների ոչ թե ձանձրույթը, այլ հիացմունքը:

Դյուրին չէ, այլապես հազարավոր գրքեր չէին գրվի բանավոր խոսքի վարպետության՝ հռետորական արվեստի, բեմական խոսքի, դասախոսելու արվեստի մասին:

Ի՞նչ տարբերություն կա բանավոր խոսքի և գրավորի միջև:

Ի՞նչն է, որ բանավոր խոսքն ունի, գրավորը՝ ոչ: Ամենից առաջ ձայնը՝ ինքնին արդեն չափազանց զգայուն, նուրբ, խորապես հուզական մի բան, որ, նույնիսկ անկախ մեր կամքից, հայտնի է դարձնում մեր տրամադրությունը: Հեռախոսով խոսում եք ձեր ընկերոջ հետ գործնական մի նպատակով և չեք ուզում, որ նա կռահի ձեր վատ տրամադրությունը: Մինչդեռ լարի մյուս ծայրից լսում եք՝ հո բան չի՞ պատահել, ձայնդ մի տեսակ է երևում...

Ինչքա՞ն ուզում ես քողարկվիր, ձայնը մատնում է:

Ի՞նչ բան է ձայնը:

Ֆիզիոլոգիական բացատրությունը հայտնի է. թոքերն օդ են արտամղում, հասցնում կոկորդում գտնվող ձայնալարերին, դրանց թրթիռը ձայն է գոյացնում: Ձայնը հասնում է բերանի խոռոչը և հենց այստեղ է, որ ձայնը՝ հնչյունի հումույթը, դառնում է հնչյուն: Ինչի՞ շնորհիվ՝ լեզվի և շուրթերի: Ամենամեծ դերն այստեղ պատկանում է լեզվին, լեզուն է, որ ազատորեն շարժվելով բերանի խոռոչում (զուր չեն ասում՝ լեզուն ոսկոր չունի), գոյացնում է հնչյուններ: Այդ հնչյուններն են, որ մենք տառեր կոչված պայմանական նշաններով արտահայտում ենք գրավոր խոսքում: Փորձեցեք արտաբերել մի քանի հնչյուն և իսկույն կզգաք, թե ինչպես ձեր լեզուն և շուրթերը տարբեր դիրք են ընդունում:

Սա երևույթի ֆիզիոլոգիականն է: Հոգեբանականը շատ ավելի բարդ է: Ամենանուրբ երաժշտական գործիքն անգամ չունի այն հուզական հարստությունը, որով օժտված է մարդկային ձայնը:

Բնորոշում են՝ թավիշ ձայն, կրծքային ձայն, թավ ձայն, լիքը ձայն, սրտալի ձայն և հակառակը՝ չոր ձայն, գլխային ձայն, ապակե ձայն... Այսպես՝ առօրյա կյանքում, մասնագիտական միջավայրում ձայնի բնորոշումներն ունեն գիտական բնույթ՝ բաս, բարիտոն, տենոր (քնարական և դրամատիկական), սոպրանո, կոլորատուրային սոպրանո և այլն:

Սրանք վոկալ արվեստին՝ երգեցողությանը վերաբերող բնորոշումներ են: Հարկ կա՞ ասելու, թե մեր կյանքում որքան մեծ տեղ են գրավում երգն ու երաժշտությունը, մանավանդ երգը՝ արվեստներից ամենահուզականը, որ մարդկային ձայնի բարձրագույն արտահայտությունն է: Դերասանական արվեստը ևս անքակտելի է բանավոր խոսքի, ուրեմն և ձայնի տիրապետման արվեստից: Մենք լավ հիշում ենք մեր սիրած դերասանների նաև ձայնը, խոսելու կերպը, արտասանության ելևէջները: Բայց ինչու՞ միայն դերասանների: Գոյություն ունի տեսողական, ինչպես և լսողական հիշողություն: Կան մարդիկ, որոնց լսողական հիշողությունն է ուժեղ. տարիներով չհանդիպած մարդու հենց միայն ձայնը լսելով՝ նրանք կարող են կռահել ով է խոսողը: Պատճառն այն է, որ ամեն մարդ ունի իր ձայնը՝ անկրկնելի յուրահատկություններով, բոլոր թելերով կապված իր հուզական աշխարհի հետ:

Կապված այնքան սերտորեն, որ հնարավորություն է տվել ստեղծելու այսպես կոչված «ճշմարտության մեքենա». հարցաքննում են մարդուն և սարքավորումն անսխալ ցույց է տալիս՝ նա ճի՞շտ է խոսում, թե՞ ոչ:

Ի՞նչն է, որ մատնում է մարդուն: Նրա խոսքի հնչերանգը՝ ինտոնացիան:



# ԺՊԻՏՆԵՐ

Անգլիացի բժիշկ Լիստերին մի անգամ կեսգիշերին հրավիրեցին հիվանդի մոտ: Լիստերը հիվանդին զննելուց հետո ասաց.

— Անմիջապես կանչեք ձեր բոլոր հարազատներին, փաստաբանին և գրեցեք ձեր կտակը:

Բոլորին հավաքեցին: Առավոտյան կտակը պատրաստ էր:

— Բժի՛շկ, շուտո՞վ մեռնելու եմ,— նվաղած ձայնով հարցրեց հիվանդը:

— Ո՛չ, ո՛չ,— պատասխանեց Լիստերը,— ձերն ընդամենը թեթև գրիպ է: Պարզապես ուզեցի չլինել կեսգիշերին ոտքի հանված միակ հիմարը:

Կոմպոզիտոր Պուչինին զբոսնում էր Միլանի փողոցներում և լսեց, թե ինչպես է թափառական երաժիշտը երգում իր «Բոհեմա» օպերայից մի հատված:

— Այստեղ շարժանկան (երգեհոնիկը) պետք է ավելի արագ պտտել, ա՛յ այսպես,— և կոմպոզիտորը ցույց տվեց, թե ինչպես պետք է անել:

Հետևյալ օրը երգեհոնահարը պլակատ էր տնկել իր գլխավերևը, որի վրա գրված էր. «Ինձ սովորեցրել է ինքը՝ Պուչինին»:

Այն տան լուսամուտից, որտեղ ապրում էր Վիկտոր Հյուգոն, մի անգամ մկրատ նետվեց դուրս և զնգալով ընկավ մայթի վրա: Նետողը ինքը՝ գրողն էր: Որպեսզի սկսած վեպը շուտով ավարտի, նա մորուքի մի մասը կտրել էր, խուզել մազերը և զրկել իրենց փողոց դուրս գալու հնարավորությունից: Մինչև մազերն աճեին, մի ամիս կանցներ, այդ ընթացքում կավարտեր վեպը:






Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻՐԻԿՅԱՆԻ

# ԿԱԽԱՐԴՆԵՐԻ ԱՇԽԱՐՀԸ

ԳԵՈՐԳԻ ՆԱՏՐՈՇՎԻԼԻ

Մեկը ծույլ էր, մյուսը՝ ջանասեր, մեկը քնկոտ էր, մյուսը արթնանում էր առավոտ ծեգին, մեկը կոտրել էր արջուկի թաթիկը, մյուսը բինտե ձյունաճերմակ կապով կապել էր արջուկի թաթիկը, մեկը կեղտի մեջ կորցրել էր պատշգամբը, մյուսը մաքուր սրբել էր հատակը, մեկը անտանելի չարաճճի էր ու իրասածի, մյուսը՝ խելացի, հասկացող: Դե, պարզ է արդեն, որ մեկը լավ աղջիկ էր, մյուսը՝ վատ: Բայց տատիկը չէր տարբերում նրանց, չէր կարողանում որոշել, թե ո՞րն է խելոքը, որը՝ չարը, որովհետև Քեթինոն ու Մզիան անչափ նման էին միմյանց: Նրանք երկվորյակ քույրեր էին, ծնվել էին նույն օրը, նույն ժամին: Շատ սիրուն էին երկուսն էլ՝ աչքերը մեղրագույն, հուրհրան, թարթիչները երկար-երկար, ծայրերն էլ ոլորուն: Մայրիկն էլ շորերը միանման էր կարել, միատեսակ կարմիր կոշիկներ հագցրել, մանկապարտեզ էլ միասին էին հաճախում, նստում նույն խմբում: Դե, տատիկն էլ ծեր էր և մի քիչ վատ էր տեսնում, ինչպե՞ս զանազաներ, թե որն է Մզիան և որը Քեթինոն: Անգամ հայրիկը չէր կարողանում նրանց զանազանել: Ուրիշ էր մայրիկը, նա երբեք չէր շփոթում: Միայն նա լավ գիտեր, որ վատ աղջկան Մզիա են կոչում, լավին՝ Քեթինո:

...Մի առավոտ, սովորականի պես աշխատանքի գնալիս, մայրիկը տատիկին խնդրեց.

— Այսօր նրանց երկուսին էլ լողացրու:

Մայրիկը գնաց, տատիկը գործի անցավ: Ջուր տաքացրեց և լողացրեց նախ Քեթինոյին: Որոշ ժամանակ հետո նո-

րից ջուր տաքացրեց և այս անգամ Մզիայի՛ն էր ուզում տանել լողարան, բայց Մզիան ծուլանում էր հանվել, առավել ևս՝ լողանալ: Դրա համար էլ, երբ տատը կանչեց, նա որոշեց ստել և ասաց.

— Ես արդեն լողացա՛, տատի՛կ...

Այս անգամ տատը կարծեց, թե ինքն է շփոթել և դարձավ Քեթինոյին:

— Գնանք լողանալու, Մզիա՛:

— Տատիկ, բայց չէ՞ որ ես առավոտյան լողացա,— լացակումած բացականչեց Քեթինոն:

Տատը երկուսին էլ ձգեց դեպի իրեն և ուշադիր նայեց՝ նույն հուրհրան, կայծկլտող աչքերը, նույն ոլորուն թարթիչները, նույն վարդագույն թշիկները: Դե հիմա, տատիկ, արի ու որոշիր, թե որին ես լողացրել, որին՝ չէ... Եվ տատիկը թոռնիկներին ստիպեց երդվել: Քեթինոն լավ աղջիկ էր և միշտ ճշմարտախոս: Հիմա էլ նա ճիշտն ասաց.

— Երդվում եմ մայրիկի արևով, որ ես Քեթինոն եմ և արդեն լողացել եմ այսօր առավոտյան

Մզիան վատ և ստախոս աղջիկ էր: Այս անգամ էլ նա ստեց.

— Երդվում եմ մայրիկի արևով, որ ես եմ Քեթինոն և ոչ թե նա, և ես եմ լողացել առավոտյան:

Տատը շատ բարկացավ: Բայց նա չգիտեր, թե թոռնիկներից որն է մեղավոր, որի անունը, ուստի երկուսին էլ նախատեց.

— Ա՛յ դուք, հիմարնե՛ր, մի՞թե չգիտեք, որ ով խաբում է և սուտ-սուտ երդվում մայրիկի արևով, նրա մայրիկը կհիվանդանա և...

Քեթինոն սկսեց լաց լինել, նա շատ էր սիրում մայրիկին և սաստիկ վախեցավ, չէ՞ որ եթե Մզիայի մայրիկը հիվանդանա և... ուրեմն իր մայրիկն էլ կհիվանդանա և... երկուսն էլ կմնան առանց մայրիկի:

Իսկ Մզիան սկսեց ծիծաղել. նա մտածեց, չէ՞ որ Քեթինոն ճիշտ է ասում, նշանակում է նրա մայրիկը չի հիվանդանա, ուրեմն իր մայրիկը՝ նույնպես:

Երբ տատը տեսավ, որ Քեթինոն լալիս է, մտածեց, որ երևի մեղավորը նա է, դրա համար էլ լալիս է: Եվ նա բռնելով Քեթինոյի ձեռքը, քարշ տվեց լողարան և լողացրեց երկրորդ անգամ:

Երեկոյան մայրիկը վերադարձավ ու հարցրեց տատիկին.

— Երեխաները լողացե՞լ են...

— Այո, երկուսն էլ լողացել են,— պատասխանեց տատը:

Մայրը ուշադիր նայեց աղջիկներին.

— Քեզ ասում եմ, լողացել են,— ասաց տատը,— ես նույնիսկ ստիպեցի նրանց երդվել, հո չէի՞ն կարող ստել:

— Երկու՞սն էլ երդվեցին:

— Երկուսն էլ:

Նայեց մայրիկը երկուսին էլ և ի՞նչ տեսնի. Քեթինոն է՛լ ավելի գեղեցկացած, մազերը մաքուր սանրած, իսկ Մզիայի մազերը թափթփված, գոգնոցը կեղտոտ, քթիկը և վզիկը կեղտոտ, ձեռքերն անլվա...

Մայրիկը գլխի ընկավ, թե բանն ինչումն է, բայց ոչինչ չասաց: Հաջորդ օրը, ինչպես միշտ, նա գնաց աշխատանքի: Կեսօրին դուռը թակեցին: Տատիկը գնաց դուռը բացելու: Ներս եկավ անծանոթ մի կին, պարկը ձեռքին:

— Ո՞վ եք դուք,— հարցրեց տատը:

— Ես եկել եմ Մզիային ու Քեթինոյին տեսնելու:

— Իսկ որտեղի՞ց դուք գիտեք նրանց:

— Ինչպե՞ս կարող եմ չիմանալ: Ես եկել եմ կախարդների աշխարհից: Մենք այնտեղ ունենք մի հեռուստացույց, որտեղից երկուսին էլ տեսնում ենք: Դուք այստեղից մեզ եք նայում, մենք այնտեղից՝ ձեզ: Երեկ, ա՛յ, տե-

սանք, թե ինչպես Մզիան խաբեց տատիկին, սուտ երդվեց մայրիկի անունով ու չլողացավ։ Իսկ Քեթինն ճիշտն ասաց։ Մեր կախարդները որոշեցին Քեթինոյին նվերներ տալ, քանի որ նա լավ աղջիկ է։ Ես էլ, ահա, եկել ու բերել եմ այդ նվերները։

Այսպես ասելով նա հանեց պարկը։

Աղջիկների աչքերը ուրախությունից ավելի պսպղացին։ Նրանք անհամբեր նայում էին մորաքրոջն ու սպասում, թե նա ե՞րբ պիտի բացի պարկը։

— Ո՞րն է ձեզնից Քեթինոն։

— Ես,— ասաց Քեթինոն։

— Ապա մոտեցիր ինձ. չէ՞ որ ես կախարդների աշխարհից եմ։ Ես հենց հիմա կասեմ, թե որն է Քեթինոն։

Աղջիկները մոտեցան նրան։ Անծանոթ մորաքույրը լուսլույն նայեց նրանց գոգնոցներին, որոնց գրպանների վրա փոքրիկ տառերով ասեղնագործված էր. մեկի վրա «Քեթինո», մյուսի վրա «Մզիա»։

Անծանոթ մորաքույրը կարդաց դրանք և ասաց.

— Ահա Քեթինոն։

Ապա բացեց պարկն ու սկսեց այնտեղից հանել նվերները՝ զարմանալիորեն գեղեցիկ մատիտներ։ Քեթինոն և Մզիան իրենց օրում չէին տեսել նրման մատիտներ։ Ծիածանի բոլոր գույները կային այնտեղ։

Քեթինոն վերցրեց դրանցից մեկը, մի փոքր շարժեց թղթի վրա և ստացվեց մի գեղեցիկ ու նուրբ մանուշակ։ Վերցրեց մյուսը և դեռ չէր քսել թղթին, կանաչ տերևը խշխշաց։ Երրորդ մատիտից արևի ճառագայթը շողաց թղթի վրա։ Հազիվ էր ձեռքը վերցրել չորրորդը, երբ թղթի վրա երևաց բիլ կապույտ երկինքը։ Հինգերորդը՝ մութ գիշերի գույնն էր, վեցերորդը՝ դեղին տանձի, յոթերորդը՝ կարմիր հոնի։ Ու այս բոլորը պատկանում էին Քեթինոյին, և՛ արևի ճառագայթները, և՛ մանուշակն ու կանաչ տերևը, և՛ գեղեցիկ ծաղիկները, ողջ աշխարհն էր նրա ձեռքում։

Մզիան սկսեց լաց լինել։ Իսկ անծանոթ մորաքույրն ասաց.

— Լաց մի՛ լինիր, Մզիա՛։ Կախարդների աշխարհում ինձ ասել են, որ եթե Մզիան դառնա խելոք աղջիկ և սուտ չերդվի մայրիկի արևով, տուր նրան ամպի մի փոքր ծվեն ու արևի ճառագայթ, մանուշակ և դեղին տանձ։

Եվ նա իր պարկից ուրիշ մատիտներ ու թուղթ հանեց։ Մզիայի դեմքը փայլեց, նա մեկնեց իր ձեռքը, բայց անծանոթ մորաքույրն ասաց.

— Դե, երդվի՛ր, որ այլևս սուտ չես երդվի մայրիկիդ արևով։

— Ես երդվում եմ, որ էլ սուտ չեմ խոսի...

— Դե ուրեմն վերցրու և՛ երկինքը, և՛ կանաչ տերևները, և՛ նուրբ մանուշակը։ Բոլորը քեզ,— ասաց մորաքույրն ու Մզիային հանձնեց այդ հիանալի նվերները։

Ծուտով անծանոթ մորաքույրը հրաժեշտ տվեց տատիկին ու գնաց։

Երբ երեկոյան մայրիկը աշխատանքից եկավ ու տեսավ այդ հիանալի մատիտները, հարցրեց, թե որտե՞ղից դրանք։

— Կախարդների աշխարհից մի մորաքույր էր եկել։ Դու մի ասի, նրանք մեզ տեսնում են հեռուստացույցով,— պատասխանեց տատը։

Երբ երեխաները պառկեցին քնելու, տատիկը հարցրեց մայրիկին.

— Ո՞վ էր, այնուամենայնիվ, այդ կինը։

Մայրը ծիծաղեց, բայց ոչինչ չասաց։

*Վրաց. թարգմ.*
*ԱՆԱՀԻՏ ՀՈՎՍԱՓՅԱՆ*



# ՊԱԲԼՈ ՊԻԿԱՍՈ

## (ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

1981 թ. նոյեմբերի 25-ին իսպանացի հայտնի նկարիչ Պաբլո Պիկասոն հարյուր տարեկան կդառնար: Արվեստի շատ սիրահարների համար Պիկասոն գույն է, Պիկասոն ձև է, Պիկասոն՝ իմաստություն է: Իսկ ինքն իր մասին ասել է. «Ես միշտ իմ ժամանակի համար եմ աշխատել»:

Պաբլո Պիկասոն ծնվել է 1881 թվականին Իսպանիայի հարավում գտնվող Մալագա քաղաքում: Հայրը նկարիչ էր և նկարչության դասատու: Հիմնականում ծաղկամանի փնջեր և աղավնիներ էր նկարում: Տղան մանկուց օգնում էր հորը՝ աղավնիների ճանկիկներն էր նկարում-լրացնում: Զարմանալի չէ, որ նա որոշեց նկարիչ դառնալ: Սկզբում սովորեց Բարսելոնայի նկարչական դպրոցում, ապա ավարտեց Մադրիդի նկարչական բարձրագույն ուսումնարանը:

1904 թվականից Պաբլո Պիկասոն հաստատվում է Փարիզում, և այնուհետև նրա կյանքը կապվում է Ֆրանսիայի հետ:

Մոսկվայի Ա. Ս. Պուշկինի անվան կերպարվեստի պետական թանգարանում ցուցադրված է նկարչի նկարներից մեկը: Մի խոսք պատ: Գետինը՝ բաց կապտավուն: Երկու կերպար՝ կույր ծերուկը և տղան: Ծերուկի դեմքը ակոսված է կնճիռներով, ողորմելի են ձեռքերը և հագուստը: Իսկ տղայի աչքերը բացված են լայն... Աղոտ կապտավուն գույնն ավելի է ընդգծում տխուր, կենտրոնացած հայացքի անելանելիության արտահայտությունը: Աղքատության և միայնակության վշտալի պատկեր է նայում մեզ կտավից:

«Աղքատ ծերուկը տղայի հետ» նկարը ստեղծվել է 1903 թվականին, նկարչի ստեղծագործության «երկնագույն» կոչված շրջանում, երբ նրա գործերի մեծ մասը նկարված է կապտականաչավուն սառը գամմայով:

Նկարչի նախասիրած կերպարները օրինավոր և կուշտ բուրժուական հասարակության կողմից դուրս շպրտված աղքատներ, օղետների մշտական հաճախորդներ, ընչազուրկներ են: Պիկասոն նրանց պատկերում է մեկ աղքատիկ կացարանների դաժան իրականության մեջ, որտեղ իրերը այնքան խղճուկ են, որքան նրանց տերերը, մեկ՝ չեզոք ֆոնի վրա: Չափազանցված կտրտված սուր ուրվագծեր, երկարացված համաչափություններ, մաշված դեմքեր և ոսկրոտ ձեռքեր, տխուր, չտեսնող աչքեր. այս ամենը մռայլ անելանելիության մթնոլորտ են ստեղծում և խորը կարեկցանք առաջացնում պատկերված կերպարների նկատմամբ:

Որոշ ժամանակ անց Պիկասոյի գործերում երևան է գալիս բոլորովին մի այլ աշխարհ՝ խեղկատակների և կրկեսի արտիստների աշխարհը: Հենց այդ ժամանակ էլ նա դառնում է հռչակավոր Մեդրանո կոչված կրկեսի հաճախորդը: Կտավների վրա հայտնըվում են ծաղրածուներ, առլեկիններ: Մեծ մասամբ նրանք պատկերված են ամենօրյա կյանքում, ընտանիքում, հազվադեպ՝ փորձերի ժամանակ: Բոլոր նկարները արված են տաք վարդագույն երանգներով: Դա արդեն Պիկասոյի ստեղծագործության «վարդագույն» շրջանն է:

Այս շրջանում իշխողը դառնում է բարեկամության թեման, երբ ուժեղը նեցուկ է դառնում, պաշտպանում է թույլին: Այդ տիպի աշխատանքներից է «Աղջիկը գնդի վրա» գործը, որը նույնպես գտնվում է Մոսկվայում: Հզոր ատլետ և քամուց օրորվող բարալիկ ցողունի նմանվող փխրուն աղջընակ: Այնպիսի տպավորություն է թողնում, որ եթե ատլետը

հեռանա, աղջնակը վայր կընկնի: Այստեղ, ավելի քան որևէ այլ նկարում, նկատելի է Պիկասոյի սերը կլասիկ պարզության, հավասարակշռվածության, ներքին համաչափության նկատմամբ:

1937 թվականի ապրիլի 26-ին, Իսպանիայի քաղաքացիական պատերազմի ամենաթեժ շրջանում, օդային «Կոնդոր» նացիստական լեգեոնի ռմբակոծիչները ոչնչացրին երկրի հյուսիսում գտնվող Գերնիկան՝ բասկերի պատմական մայրաքաղաքը: Պիկասոն զայրույթի բողոք բարձրացրեց այս ոճիրի դեմ: «Գերնիկա» կոչվող իր կտավում նա պատկերում է գունդուկծիկ, հեծեծող, խոշտանգվող մարդկանց. ձին գալարվում է հոգեվարքի մեջ, մի կին ճչում է սպանված երեխայի դիակի վրա... Ամբողջ աշխարհն այն ընկալեց որպես պատերազմը նզովող մի կտավ:



# ԻՄ ՊԱՏԿԵՐԱՍՐԱՀԸ





ՊԱԲԼՈ ՊԻԿԱՍՈ
«Աղջիկը գնդի վրա»

Իսկ հույսի և խաղաղության հավիտենական խորհրդանիշ աղավնին դարձավ Պիկասոյի գրաֆիկայի սիրած մոտիվը: Նրա աղավնիները անսովոր մաքուր են, հուզիչ, միաժամանակ երեխաների պես անպաշտպան և ժողովուրդների խղճի պես անճարտելի:

1944 թվականին նկարիչը Ֆրանսիայի կոմունիստական կուսակցության անդամ է դառնում: Նա գիտեր, որ մարտահրավեր է նետում այն հասարակությանը, որի մեջ ապրում էր: Քաղաքական դիրքորոշումը, որին նա անցավ, թելադրված էր ոչ թե անցողիկ հրապուրանքով, այլ՝ տարիների փորձով և մտորումներով:

Հավանաբար չկա կերպարվեստի մի ճյուղ, որին չմոտենար, որտեղ նորարարություն մտցրած չլիներ Պիկասոն: Արվեստին վերաբերող ամեն ինչ զբաղեցնում, կլանում էր նրա կյանքը, աշխատանքի և հանգստի ժամերը:

«Ես չէի կարող ապրել, առանց իմ ամբողջ ժամանակը արվեստին տալու: Ես արվեստը սիրում եմ որպես կյանքիս միակ նպատակ: Այն ամենը ինչ ես անում եմ արվեստի հետ կապված, ինձ մեծ ուրախություն է պատճառում»,— ասում էր վարպետը:

Իհարկե, նրա ստեղծած ոչ բոլոր գործերն են մտնում համաշխարհային արվեստի գանձարանը: Բայց, ուսումնասիրելով նրա մեծ ժառանգությունը, տեղին է հիշել 1922 թվականին Պիկասոյի արվեստանոցը այցելած Մայակովսկու խոսքերը. «Դա ամենամեծ նկարիչն է և՛ իր թափով, և՛ համաշխարհային արվեստի մեջ ունեցած իր նշանակությամբ»:

Վ. ԳԵՐԱՍԻՄՉՈՒԿ

*ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՅԱՆ*

# ԿԻԹԱՌԸ

Մայրի՛կ, ես մի կիթառ ունեմ,
Թրթռում է կրծքիս տակ,
Թրթռում ու ձայն է տալիս
Քամիներին կապուտակ:

Թրթռում ու ձայն է տալիս,
Ծաղկին, ցողին, թիթեռին,
Եվ երգասաց թռչուններ կան
Իմ կիթառի լարերին:

Ընկերոջս երբ պատմեցի,
Ասաց՝ փչոց է, ծերու՛կ,
Չի երևում ոչ մի կիթառ
Քո մարմնի գծերում:

Ընկերուհուս երբ պատմեցի,
Ասաց՝ ինչ լավ ես խոսում,
Սակայն նա էլ չհավատաց,
Որ կիթառ կա իմ ներսում:

Բայց իրենք էլ ունեն կիթառ
Ու ափսոս որ չգիտեն,
Ու մենակ եմ ես վայելում
Նվագների բույրը դեռ:

Մայրի՛կ, ես մի կիթառ ունեմ,
Նվագում է օրնիբուն,
Արևի հետ արթնանում է,
Արևի հետ մտնում քուն:

Չգիտես թե որտեղից, բանջարանոցի այն մասում, ուր Վարդուշ մայրիկը սոխ ու լոբի էր ցանել, հայտնվեց վարդի փոքրիկ մի տունկ: «Էհ, երևի քամին է սերմը բերել, սիրուն է, թող մնա»,— մտածեց Վարդուշ մայրիկը և սոխն ու լոբին ջրելիս սկսեց վարդն էլ ջրել: Վարդի տունկը մեծացավ: Ի՜նչ գեղեցիկ էր նա. մուգ կարմիր, բոցկլտուն, թավշաթերթ վարդերով զուգված, ասես վառվող ջահ լիներ բանջարանոցի կանաչության մեջ:

— Թագուհի է,— շշնջաց շատ բան տեսած քամին,— իսկակա՜ն թագուհի:

Եվ վարդը մտածեց. «Այս ո՞ւր եմ ընկել, իմ տեղը արքայական պարտեզում է...»

Իհարկե, ինքն իր մեջ էր խորհում այդպես, իսկ արտաքուստ շատ սիրալիր էր բոլորի հետ: Չնայած այդ սիրալիրության տակ երբեմն տխրությանը խառնված հեգնանք կար:

Մի անգամ, երբ տեսավ, թե ինչպես են գրուցում կանաչ լոբու տձև թուփն ու կարմիր ճակնդեղի թերան կոճղարմատը, ժպիտով ասաց.

— Օ՜, բանջարանոցի սիրունները հավաքվեցին:

Իսկ նրանք գլխի էլ չընկան, թե վարդը հեգնում է: Զվարթացած լոբին փորձեց նույնիսկ սրամտել.

— Այո՜, իսկ սիրուններից մեկն էլ, ահա, միացավ մեզ:— Նկատի ուներ վարդին:

Մի օր այդ կողմերով անցնում էր իշխանը:

— Այս ի՜նչ գեղեցիկ վարդ է, և այս բանջարանոցո՞ւմ,— զարմացավ նա:

Վարդուշ մայրիկը ասաց.

— Այդքան որ հավանում ես, նվիրում եմ քեզ, իշխա՛ն, վերցրու տար:

Բարեհոգի և գեղեցկի սիրահար մարդ էր իշխանը: Նա տնկեց վարդն իր ծաղկանոցում և ամեն առավոտ, կեսօր և իրիկուն, հիանում էր նրանով:

Մի օր, իշխանի այգու մոտով անցնելիս, թագավորը նկատեց վարդենու թուփը: Նա հրամայեց կանգնեցնել կառքը և իր հիացմունքն հայտնեց իշխանին: Իշխանը շատ էր սիրում վարդի իր թուփը, միաժամանակ հպարտ էր ու առատաձեռն: Մյուս օրը վարդի

# ԹԱԳՈՒՀԻ ՎԱՐԴԸ

ԱՆԱՀԻՏ ՊԱՐՍԱՄՅԱՆ

թուփը շքեղ թաղարի մեջ մատուցվեց թագավորին:

Արքայի պարտեզում նրան խնամում էին երեք պարտիզպան: Վարդի թուփն հիշում էր այն ժամանակները, երբ ապրում էր Վարդուշ մայրիկի բանջարանոցում, և կարոտում էր մի բանի, որ այնտեղ կար, այստեղ չկար, մի մեծ, մի գեղեցիկ բանի, հանուն որի արժեր նույնիսկ մեռնել...

— Օ՜ թագուհի վարդ, կարմիր ու քաղցրաբո՛ւյր վարդ,— շշնջում էր նրա ականջին քամին,— որքան առանձնահատուկ կլինես դու հյուսիսային բնանկարի վրա, ձյան ճերմակության մեջ: Դու երազ կլինես այնտեղ, իջած երազների աշխարհից: Մարդիկ քեզ նայելու համար շատ ճամփաներ կանցնեն, կերկրպագեն քեզ, օ՜ թագուհի վարդ...

Լսում էր, լսում վարդի թուփը, մի օր էլ ասաց:— Տա՛ր ինձ այնտեղ, քամի՛, տար ինձ քեզ հետ:

— Բայց դա...,— սարսռաց քամին,— դու չես դիմանա հյուսիսային քամու շնչին: Դու՝ այդպես տաք, կարմիր ու բոցկլտուն, կսառչես այնտեղ:

— Տա՛ր ինձ այնտեղ,— պահանջեց վարդը,— տա՛ր:

Եվ քամին տարավ նրան:

Վարդն սթափվեց օդի սառնությունից: Իսկապես, այնպես գեղեցիկ էր ձյան անաղարտ ճերմակությունը: Այնպես գեղեցիկ էին իր թավշակարմիր, բոցկլտացող ծաղիկները կանաչ տերևների հետ միասին՝ ձյան ճերմակի վրա:

Նա տեսավ, թե ինչպես են իր շուրջը հավաքվում հյուսիսի բնակիչները՝ քուրքերով, ձեռքերը տաք թաթմանների մեջ: Տեսավ, ինչպես են իրեն մոտենում հյուսիսային եղջերուներն ու սպիտակ արջերը՝ ճերմակ ու խորհրդավոր:

Նրանք նայում ու նայում էին վարդին: Նրանք չէին հավատում իրենց աչքերին: Նրանց հայացքները հիացում, սեր ու երախտագիտություն էին արտահայտում: Նրանք մինչև մահ հիշելու էին վարդին: Նրանք փայփայելու էին նրա պատկերն իրենց մեջ:

Իսկ վա՛րդը: Նա զգում էր, թե ինչպես վայրկյան առ վայրկյան սառչում է իր տունկը: Նախ սկսեցին սառչել բարակ, թելիկ-թելիկ մազարմատները: Հետո կարծր այդ սառնությունը սկսեց



ՆԿ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

ցողունն ի վեր բարձրանալ: Նա գիտեր, որ երբ սառնությունը հասնի սրտին, ինքը կմեռնի:

Եվ, միևնույն է, երջանիկ էր, որովհետև հյուսիսի բնակիչների աչքերում տեսել էր այն, ինչի համար արժեր և մեռնել...

# Ինչ են պատմում լուցկու պիտակները

Փոքրիկ լուցկու հայտնաբերումը նշանակալից է մարդկության համար, որպես կրակ ստանալու հուսալի, ապահով և շատ հարմար միջոց՝ պիտանի տնտեսական բոլոր գործերում:

Անվտանգ լուցկու գյուտարարը շվեդ քիմիկոս Բետերգոմն էր: Նա էր, որ 1848 թվականին հայտնագործեց անվտանգ, կամ ինչպես ընդունված է ասել՝ շվեդական լուցկին: Սակայն լուցկին ավելի վաղ հայտնաբերվել է Անգլիայում. մարխի ծայրին դյուրավառ խառնուրդ էր լինում, որը վառելու համար հարկավոր էր ընկղմել ծծմբաթթվով լի սրվակի մեջ. գլխիկը բոցավառվելով՝ այրում էր մարխը: Լուցկու տուփի վրա գրված էր լինում օգտագործելու կանոնները: Սկզբնական շրջանում լուցկու օգտագործումը ծայրահեղ զգուշություն էր պահանջում, հետագայում միայն հրահանգների փոխարեն տուփի վրա տեղ գտան գեղարվեստական պատկերներ: Ռուսաստանում այդ տիպի լուցկիների առաջին ֆաբրիկան ստեղծվեց Պետերբուրգում, 1837 թվականին:

Անտոն Պավլովիչ Չեխովի «Շվեդական լուցկի» պատմվածքի հերոս Դյուկովսկին պատմում է մի սպանության մասին, որ բացահայտվել է լուցկու մի հատիկի միջոցով: Միայն կալվածատերերն էին դրանից օգտվում: Հենց այս հանգամանքն էլ ճիշտ ուղու վրա կանգնեցրեց քննիչ Չուբիկովին. շվեդական լուցկին ծառայեց իբրև ապացույց և հանցանշան:

Սկանդինավյան երկրներից էր բերվում լուցկին, այսպես ասած՝ «այրվող փայտիկները», և միայն անցյալ դարի 70-ական թվականներին էր, որ լրացավ արտածման թույլտվության (լիցենզիայի) ժամկետը, և հայտնվեցին ռուսական լուցկիները:

Այժմ լուցկու հայրենական արդյունաբերությունը ամենամեծն է աշխարհում, սակայն նրա պահանջարկն հարաճուն ավելանում է. 1953 թվականին բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնում էր 42, 1964 թվականին՝ 68, 1974 թվականին՝ 80 տուփ լուցկի:

Մեր երկրում այսօր գործում են լուցկու 23 ձեռնարկություններ, որոնք օրական թողարկում են ավելի քան 30 միլիոն տուփ լուցկի: Սովետական լուցկին արտահանվում է մի շարք երկրներ (հատկապես Անգլիա, Հոլանդիա, աֆրիկյան և ասիական պետություններ): Երկրում լուցկու խոշորագույն ձեռնարկություններից են «Գիգանտը», «Բալաբանովոյի փորձարարական ֆաբրիկան», Վիլյանդիի անտառկոմբինատը (Էստոնիա), Ռիգայի «Կոմետան», «Բալ-

թիան», Չուդովո քաղաքի՝ երկրում հնագույն «Պրոլետարսկայա զնամյա» ֆաբրիկան:

Անտառանյութի խնայողության նպատակով յուրացվել է լուցկու տուփերի արտադրությունը ստվարաթղթից, որի դրոշմը յուրաքանչյուր ժամում թողարկում է 50 հազար տուփ: Մեծապես բարելավվել է որակը, ուշագրավ, հետաքրքրական և բազմազան դարձել պիտակների ձևավորումը, բարձրորակ՝ տպագրությունը:

Թողարկվում են նաև այսպես կոչված «քամու» լուցկիներ՝ հատուկ հերմետիկ հարմարանքով, որոնցից կարելի է օգտվել հողմի, անձրևի և փոթորիկի ժամանակ: Յուրացվել է նաև լապտերիկ-լուցկիների արտադրությունը, դրանք այրվելիս կարմիր, կանաչ, դեղին, կապույտ լույս են արձակում: Կան հսկա լուցկիներ՝ վառելափայտի չափ, ինչպես նաև ճտլիկ լուցկիներ՝ սովորական լուցկու գլխիկի մեծության:

Ինչ խոսք, լուցկին անփոխարինելի միջոց է կենցաղում: Սակայն չի վերացել լուցկու նկատմամբ զգուշավորությունը: Ծ ա ր ո ւ ն ա կ պետք է հիշել, որ մի հատիկ լուցկին կարող է ամբողջ անտառ հրդեհել: Պետք է նաև հիշել, մեծ դժվարությամբ է պատրաստվում կենցաղում թերևս ամենաէժան այդ իրը, մշտապես հոգ տանել տընտեսելու այն:

Երբեմն երեխան աննպատակ վառում է լուցկի լուցկու ետևից, մի բան, որ հղի է վտանգավոր հետևանքներով:

Լուցկին կարող է բավարարել նաև այլ հետաքրքրություններ ու պահանջներ: Պատմում են, որ Մոսկվայի փաստավավերագրական կինոստուդիայում Վ. Ի. Լենինի մասին ժապավեն նկարահանելիս, կինոգործիչներին հարկավոր եղան 20-ական թվականներին թողարկված լուցկու պիտակներ (սցենարով պահանջվում էր մոմակալ, կողքին՝ լուցկու տուփ):

Մի այլ կինոնկարում կինոգործիչների առջև դժվար լուծելի հարց էր ծառացել՝ գտնել 110 տարի առաջվա լուցկի, որ գործածում էր Մարքսը: Եզրակացությունը մեկն է՝ առաջին հայացքից աննշան թվացող լուցկու պիտակները կարող են օգտակար լինել դարաշրջանն ուսումնասիրելիս:

Այժմ ֆիլատելիայի խանութներում և կրպակներում հատուկ փաթեթներով վաճառքի են հանվում լուցկու պիտակներ: Դրանք հավաքողները կոչվում են ֆիլումենիստներ: Սովորաբար փաթեթները կրում են թեմատիկ բնույթ: Այսպես, վերջերս շրջանառության մեջ դրված փաթեթներից մեկը նվիրված էր Անդրկովկասի եղբայրական երեք հանրապետություններին: Պիտակներից հինգը հայկական թեմաներով են. պատկերված են 19-րդ դարի ազգային տարազներով զգեստավորված կին և տղամարդ, որոնցից մեկը իլիկ է մանում, մյուսը՝ նվագում: Երկու գունավոր պիտակներ պատկերում են 14-րդ դարի խաչքար և ռելիեֆ աշխատանք, փայտից փորագրված գդալաման (19-րդ դար): Ուշագրավ են նաև վրացական ու ադրբեջանական թեմա[illegible]ով լուցկու պիտակները, որոնք պատկերում են քարից, փայտից, բրոնզից փորագրություններ, հրբին զարդանախշեր:

*ՌՈԲԵՐՏ ՀԱԿՈԲՅԱՆ*

# Դյուպակնի ավանդությունը

Սյունյաց իշխան Անդոկին պարսից Շապուհ թագավորը հատկացնում է իր խնջույքի սեղանի տասնչորսերորդ տեղը, և Անդոկը այդ իր համար անպատվություն համարելով, ոչինչ չի ճաշակում, լքում է սեղանը և հեռանում պալատից:

Այնուհետև, վիրավորված իշխանը ընտրելով նպաստավոր ու հարմար պահ, անցնում է իր հազար յոթ հարյուր հեծյալ մարտիկների գլուխը, սրընթաց արշավելով հասնում է արքայանիստ Տիզբոն քաղաքը և գրավում այն, առնում ոսկու և արծաթի անհամար ավար, թանկագին ակնեղեն, այլ գոհարեղեն և հեռանում քաղաքից: Հետապնդող պարսկական զորքը հասնում է Սյունիք և գտնում այն ավեր ու անմարդաբնակ: Այս դեպքից հետո շահի մոտ ոչ ոք չի համարձակվում Սյունիքի անունը արտասանել: Նրա հրամանով պալատի դռան մոտ դնում են պղնձյա մի սանդ՝ լցված հնոցի մոխրով: Ամեն անցնող ու դարձող պարտավոր էր սանդի մոխիրը ծեծել, ասելով՝ «Թող Սյունյաց հզորությունը փոշիանա այս մոխրի նման»:

Ամոթալի այս սովորությունը երկար ժամանակ պահպանվում էր Շապուհի մայրաքաղաք Տիզբոնում:

Տարագիր Սյունյաց իշխանը իր ընտանիքով ապաստանել էր Բյուզանդիայում, որտեղ և մահացավ հայրենիքից հեռու: Հոր մահից հետո նրա Բաբիկ անունով որդին ծպտյալ վերադառնում է Պարսկաստան և ծառայության մտնում մի զորականի մոտ: Չմատնելով իր ով լինելը, նա մասնակցում և հաղթում է Պարսկական օլիմպիական խաղերում:

Հենց այդ ժամանակ հոների երկրից Հունգուր անունով մեկը, որի արտաքին տեսքից անգամ թշնամիները սարսափում էին, ասպատակում և ավերում է Պարսից աշխարհը:

Այս հսկան մենամարտի հրավեր է ուղարկում Շապուհին, բայց Շապուհը վախենում է նրա հետ մենամարտել և փնտրում է հարմար մեկին, որ փոխարինի իրեն:

Ահա այստեղ է, որ արքային հայտնի է դառնում մեծանուն մարզիկ Բաբիկի անունը:

Շապուհը կանչում է Բաբիկին և երդվում կատարել նրա բոլոր ցանկությունները, եթե նա մենամարտի ու հաղթի Հունգուրին:

Բաբիկը վագրակերպ սաղավարտ է դնում իր գեղեցիկ գլխին, մարգարտակուռ զրահներ հագնում վայելչակազմ մարմնին, թուրը կապում, ձեռքն առնում նիզակն ու վահանը և նստում սև երիվարի վրա:

Հսկաների մենամարտը տևում է առավոտից մինչ ուշ երեկո և վերջանում է Բաբիկի հաղթանակով:

Շապուհը անմիջապես կանչում է հերոսին, նրա ցանկությունը իմանալու և բավարարելու համար:

Բաբիկը գալիս, կանգնում է արքայի առջև ու ասում. «Վերացրու քո դռան պղնձյա սանդը, արքա»:

Շապուհը հրամայում է սանդը վերացնել, իմանում է Բաբիկի ով լինելը և վերադարձնում է նրան իր հոր իշխանական տիտղոսը:



# ԱՊՈԼԼՈՆ ԹԻԹԵՌԸ

Գարունը բացվելուն պես ծաղկառատ տափաստաններում, զմրուխտյա մարգագետիններում, անտառներում ու ճահճուտներում հայտնըվում են անթիվ-անհամար, բազմերանգ ու բազմաձև թիթեռներ, որոնց բանաստեղծական լեզվով «թռչող ծաղիկներ» են անվանում։

Ինչ խոսք, թիթեռները չափազանց գեղեցիկ են, և բնությունն անհնար է պատկերացնել առանց դրանց։ Սակայն ձեզ անշուշտ հայտնի է, որ թիթեռների զգալի մասը գյուղատնտեսական կուլտուրաների անկուշտ վնասատուներ են։ Ճիշտ է, թիթեռը անմիջականորեն վնաս չի հասցընում բույսերին, դեռ ավելին, ակտիվորեն մասնակցում է դրանց փոշոտմանը, սակայն նրանց ձվերից դուրս եկած թրթուրները որոշ դեպքերում ընդունակ են իսպառ ոչնչացնելու բերքը։

Այստեղից էլ պարզ է, որքան էլ գեղեցիկ լինեն թիթեռները, միևնույն է, դրանց որոշ տեսակների դեմ անհաշտ ու անողոք պայքար պետք է ծավալել։ Այդ են պահանջում գյուղատնտեսական արտադրության շահերը։

Սակայն այսօր այդ վնասակար միջատներից շատերը անհետացող և հազվագյուտ տեսակներ են, որոնց կորուստը խիստ անցանկալի է։ Նշանակում է, նման միջատները պետք է միաժամանակ պահպանվեն. չի կարելի դրանց իսպառ ոչնչացնել։ Ոսկյա միջինն այն է, որ սահմանափակվի դրանց բազմացումը մինչև գյու-

## «ՍԵՎ ԾՈՎԸ» ՇՎԵԴԻԱՅԻ ԱՓԵՐԻՆ

Երբ ուսուցիչը փոքրիկ Անսելմից պահանջեց քարտեզի վրա ցույց տալ Սև ծովը, նա ըստ սովորության ցուցափայտն ուզեց դեպի վար ուղղել։ Հետո հապաղեց ու... հանկարծ հարազատ Շվեդիայի ափերից ոչ հեռու, ճիշտ Հյուսիսային ծովը նշեց, ու միաժամանակ խորամանկ հայացքով ուսուցչին նայեց։

Ուսուցիչը ակնոցի հաստ ապակիների միջով խիստ նայեց աշակերտներին։

— Դա չար կատակ է, — չոր ասաց ուսուցիչը Անսելմին ու տեղը նստեցրեց։

Բայց ահա թե ինչումն էր բանը։ Մի անգամ արևելյան ուժեղ քամին դեպի ափ էր մղել մի ամբողջ սև դաշտ, որը կենդանի էակի պես թըրթռում էր։ Դրանք նավթի մեջ թա-

## Կենդանական աշխարհի հրաշալիքները

ղատնտեսության համար անվտանգ քանակության և միաժամանակ հոգ տարվի, որպեսզի դրանք իսպառ չոչնչանան:

Կա նաև միջատների մի այլ խումբ, որը մեծ վնաս չի հասցնում գյուղատնտեսությանը, ոչ էլ նրանց զանգվածային կարգով չի ոչնչացնում, դրանք մեծ հետաքրքրություն են ներկայացնում սիրող միջատաբան-կոլեկցիոներների համար, որոնք ամեն գնով ցանկանում են ձեռք բերել այդ հազվագյուտ միջատը:

Նման միջատների թվին է պատկանում ապոլլոն թիթեռը, որը մասնագիտական գրականության մեջ կոչվում է «պառնասիուս ապոլլոն», կամ՝ պառնասյան ապոլլոն:

Այս բանաստեղծական անվանմանը թիթեռն արժանացել է իր խոշորության և արտակարգ գեղեցկության շնորհիվ:

Ապոլլոնը տարածված է Եվրասիայի բարեխառն գոտում: Դա դեղնավուն թիթեռ է, որի վերին զույգ թևերն ունեն մուգ բծեր ու երկայնական կոր գծեր: Կուրծքը, փորիկը, ինչպես նաև ստորին զույգ թևերի ներքին եզրերը ծածկված են գորշ աղվամազով: Ստորին զույգ թևերի վրա կան մեկական զույգ կարմիր բծեր՝ շրջապատված սև եզրաշերտերով: Այդ բծերի կենտրոնը սպիտակ է: Թևերի բացվածքը 9 սանտիմետր է:

Տարածված է մեր հանրապետության հիմնականում անտառային և տափաստանային շրջաններում: Դժբախտաբար, վերջին տարիներին այս տեսակի թվակազմը խիստ նվազել է և պահպանության կարիք է զգում: Ոչնչացման պատճառը թունաքիմիկատների զանգվածային օգտագործումն է և միջատի գրավիչ գեղեցկությունը. շատերն են ցանկանում իրենց հավաքածուի համար ձեռք բերել այս անսովոր գեղեցիկ ու խոշոր թիթեռը:

Առաջին անգամ Կառլ Լիննեյն է նկարագրել այս գեղեցիկ միջատը և տվել դիպուկ ու հարմար անվանում: Հետագայում հայտնաբերվել են ապոլլոնի ավելի քան 200 այլատեսակներ, նույնպես տարածված Եվրասիայի բարեխառն գոտում: Դժբախտաբար, գրեթե բոլոր այլատեսակներն էլ հազվագյուտ միջատներ են:

Անհրաժեշտ է լավ ճանաչել և ամենուրեք պահպանել այս հետաքրքիր ու խիստ արժեքավոր թիթեռը:

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*
*կենսաբանության դոկտոր, պրոֆեսոր*

թախված թռչուններ էին: Բացի հազար ջրալող թռչուն դանդաղ մեռնում էին, իսկ նրանց ետևից հսկայական տարածության վրա մահաբեր ջրի սև շերտ էր ձգվում:

Սա արդեն առաջին ողբերգությունը չէ, որ տեղի է ունեցել Շվեդիայի ափերի մոտ: Ոմանք ենթադրում են, որ նավթը սիստեմատիկաբար դուրս է հոսում երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ ջրասույզ արված նավերից: Մյուսները գտնում են, որ մեղավոր են այն նավթային ընկերությունները, որոնք նավթի հանույթով են զբաղվում բաց ծովում: Հենց սրանք էլ, արագ շահույթի ետևից ընկած, մոռանում են անվտանգության միջոցների մասին և թույլ են տալիս, որ նավթի հսկայական զանգվածները տարածվեն ծովի մակերևույթին:

Ինչ էլ որ լինի, ենթադրությունները շատանում են, իսկ Հյուսիսային ծովը շարունակում է սևանալ...

# ՄԵԼԱՆՅԱ ԱԲՈՎՅԱՆ

Ավարտել է Ալավերդու 7-ամյա դպրոցի դաշնամուրի բաժինը: Բայց իր տարերքը երգն էր: Մորից ժառանգել էր ձայնական փայլուն տվյալներ: Այդ իսկ պատճառով ընդունվել և 1971 թըվին ավարտել է Երևանի կոնսերվատորիայի վոկալ բաժինը (Մարիանա Հարությունյանի դասարան): Կոնսերվատորիայի 3-րդ կուրսից հանդես է գալիս մենահամերգներով: 1973 թվին ժողովըրդական երգի համամիութենական մրցույթում, որին մասնակցում էին 150 հավակնորդ, երգում է հայ միջնադարյան տաղեր, Կոմիտաս, ժողովըրդական այլ երգեր, և գըրավում է առաջին տեղն ու ստանում ոսկե մեդալ: Նույն թվին ժողովրդական երգերի Բեռլինում կայացած 10-րդ միջազգային մրցույթում, որին մասնակցում էին 140 երկրների ներկայացուցիչներ, ստանում է առաջին կարգի դիպլոմ և ոսկե մեդալ: Իր երգացանկում ունի շուրջ 200 երգ՝ դասական, ժողովըրդական, միջնադարյան տաղեր:

«Երազում եմ օպերայում Անուշի դերերգը կատարել,— ասում է նա,— թեև իմ տարերքը կամերային երգն է, էստրադան, անմիջական շըփումը ունկնդրի հետ: 1975 թվից հանդես եմ գալիս գերազանցապես մեր ազգային երգերի կատարմամբ:

Համերգային շրջագայությունները իմ գործունեության գլխավոր առանցքն են կազմում: Երգել եմ Սովետական Միության շատ և շատ քաղաքներում, արտասահմանյան շատ երկրներում: Ամենուր իմ նպատակն է եղել այլազգի ունկնդիրներին ներկայացնել հայ երգարվեստը: Համերգներիս երկրորդ բաժինը մշտապես և ամբողջովին հատկացնում եմ հայ երգին: Պետք է ուրախությամբ ասեմ, որ մեր երգերը այնքան մեղեդային են, գունեղ, այնքան հարուստ ու բազմաբովանդակ, որ օտար ունկնդրին էլ են համակում, խանդավառում, հետաքրքրություն առաջացնում նրա մեջ դեպի մեր երգարվեստը:

Շատ հարուստ է ու անսպառ մեր ժողովրդական երգի գանձարանը: Այդ հարուստ գանձարանից իմ երգացանկում բընականաբար տեղ է գըտել մի համեստ բաժին: Դրանց վրա աշխատելիս ես ունենում եմ ըստեղծագործական մեծ բերկրանք ու երջանկություն: Շարունակում եմ համալրել իմ երգացանկը նորանոր հետաքրքիր երգերով, դրանք ունկընդրին ներկայացնելով իմ մեկնաբանումով, դրանց մեջ դնելով իմը, ինչպես որ իրենն է դնում երգի մեջ ամեն կատարող, բայց այնպես զգույշ, որ հարազատ մնա երգի բուն, ժողովրդական ոճին և ոգուն»:

Լուսանկարը՝ ՏԻԳՐԱՆ ՓԱՆՅԱՆԻ



## ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ



**ՄԱՐԻԱՄ ԽԱՉԱՏՐՅԱՆԸ** սովորում է Երևանի Պուշկինի անվան դպրոցում: Տասնչորս տարեկան է: Նկարել սկսել է փոքր հասակից: Հատկապես սիրում է նկարել կարդացած հեքիաթների ու պատմվածքների թեմաներով: Ձեզ ենք ներկայացնում Հովհ. Թումանյանի «Կիկոսի մահը» հեքիաթի նրա նկարազարդումները:



Գընացի մարդի,
Ունեցա որդի,
Գըդակը պոպոզ,
Անունը Կիկոս.
Վեր ելավ ծառին,
Ցած ընկավ քարին...
Վա՜յ Կիկոս ջան,
Վա՜յ որդի ջան...



— Արի՛, արի՛, անբախտ մորքուր, տես քո Կիկոսն ինչ եղավ.

## Հունիսի 1-ը երեխաների պաշտպանության միջազգային օրն է



— Վա՜յ, քոռանան քու տատի աչքերը, Կիկոս ջան,— մերն էլ ծնկանը զարկում է, նստում է աղջիկների կողքին, ըսկըսում է նրանց հետ սուգ անել:



Մարդը տեսնում է՝ կնիկն էլ գնաց աղջիկների ետնից ու սա էլ չեկավ: Ասում է՝ մի գնամ տեսնեմ էս ինչ պատահեց, որ սրանք իրար ետնից գնացին մնացին աղբրումը:



Սրանց միջի խելոքը հերն է լինում: Ասում է.

— Ա՜յ հիմարներ, ի՞նչ եք նստել էստեղ ու սուգ եք անում... Վեր կացեք, եկեք գնանք մեր տունը, մարդ կանչենք, ժամ ու պատարագ անենք, Կիկոսի քելեխը տանք...

*ՄՈՒՇԵՂ ՀԱԿՈԲՅԱՆ*

# ԼՈՐԻ ՈՐՍ

*(Հայկական բանահյուսությունից)*

Մի օր իմացա, որ Գաղա տափում շատ լոր կա: Վեր կացա, որ գնամ սպանեմ, բերեմ ուտենք:

Գաղա տափի արտը հասել էր, ոսկու պես դեղնել, լորերն էլ միջին դես-դեն են թռչում: Կուզեկուզ գնացի արտի կեսը, տեսնեմ՝ մի լորի բույն, լորն էլ միջին: Լոր մի ասի, մի գոմշի ձագ ասա: Ձեռքս տարա բույնը՝ չմտավ, ոտքս տարա՝ չմտավ, գլուխս տարա՝ չմտավ: Չարչարվեցի, զոռով մտա: Էդ անտեր լորը հետըս կռվեց. խփեց՝ ընկա: Վեր կացա, ես խփեցի՝ նա ընկավ: Մեկ էլ վեր կացավ, որ թափով ինձ խփեց, ինքը վայր ընկավ, փռվեց: Լորը շալակեցի, որ դուրս գամ բնից, բնի բերանը նեղ էր՝ չկ ա ր ո ղ ա ց ա դուրս գամ: Ուզեցի ձեռքս դուրս բերեմ՝ ձեռքս տեղ չարեց: Ուզեցի ոտքս հանեմ, դուրս չեկավ: Գլուխս էլ դուրս չեկավ, մնացի մոլորված:

Շատ մտածեցի, վերջը հնարը գըտա: Ասի. «Գնամ տուն, մի բահ բերեմ, բնի բերանը լայնացնեմ, համ ես դուրս գամ, համ էլ լորը դուրս բերեմ, տանեմ տուն»: Վեր կացա, գնացի տուն: Դես ման եկա, դեն, բահը չգտա: Ասի. «Գնամ քեռոնց բահը տանեմ»:

Գնացի դռանը կանգնեցի ու ձեն տվի.

— Քեռի՛ Հոբոս, քեռի՛ Հոբոս, հե՛յ:

— Այ՛տա, էտ ո՞վ ես, էտ ի՞նչ ես ուզում,— տանից գոռաց քեռի Հոբոսը:

— Ե՛ս եմ, ե՛ս, քեռի՛ Հոբոս, մի բա՛հ տուր, տանեմ լորի բնի բերանը լայնացնեմ, համ ես միջիցը դուրս գամ, համ էլ լորը միջիցը հանեմ, բերեմ էփենք ուտենք:

— Այ՛տա, ա՛յ փչվիս դու,— ասաց,— բահը դռներին կլինի, տանում ես՝ տար. էլ ինչու՞ ես ինձ խանգարում, քունս փախցնում:

Մեկ էլ նայեցի չորս կողմս, տեսնեմ՝ բահը դրած է: Վերցրի, գնացի լորի բնի բերանը քանդեցի, լորը տնքալով շալակեցի, դուրս բերի ու ճամփա ընկա դեպի տուն:

Մի քիչ առաջ գնացի, մի ահռելի գայլ առաջս կտրեց, ատամները ժնգժնգացրեց, աչքերը վրաս չռեց: Էստեղ, ինչ ճիշտն է՝ ճիշտը, շատ վախեցա: Լորը գցեցի ու փախա:

Թե ինչքան էի գնացել՝ չգիտեմ, մեկ էլ գայլը կաղկանձեց, ու ձայնը կտրվեց: Ետ նայեցի, տեսնեմ՝ լորն ուշքի է եկել, գայլին բացով տվել ու սպանել: Վախս փախավ, ետ եկա:

Լորը թռավ գնաց, իսկ գայլը մնաց փռված: Դանակս հանեցի, գայլի մորթին քերթեցի, շալակեցի ու գնացի տնքալով: Շատ էի գնացել, թե քիչ, ծովի հանդիպեցի: Մի նավապետի վճարեցի ու նավ նստեցի: Նավը ճեղքեց ծովի ալիքներն ու առաջ գնաց, բայց ծակ տեղ ուներ, խորտակվեց, գայլի մորթին էլ սուզվեց ջրի տակ:

Շատ ափսոսացի, որ նավը խորտակվեց, և գայլի մորթին սուզվեց ջրի տակ, թե չէ ինչքան բան դեռ կպատմեի...

# Առյուծն ու էշը

ՎԱՐԴԳԵՍ ԲԱԲԱՅԱՆ

Առյուծը արի՝
սարսափն անտառի,
ուժից ընկել է, ծերացել սաստիկ:
Կոտրել են ասես թաթերը հաստլիկ:
Քաղցած ու անզոր ընկած իր որջում՝
անցած օրերն է նա մտաբերում,
սպասելով իր ուշացած մահին...
Եվ հենց այդ պահին
էշն է հայտնվում:
Ինչպե՞ս է հրճվում մոխրաթավալը...
Վերև է տնկում հետևի քացին,
Ուժգին հարվածում գետին ընկածին:
Առյուծն ասում է.
— Օ՛, տեր-բնություն,
Դու, որ ինձ հզոր առյուծ ես ծնել,
ինչու՞ ես բախտի չար ծաղրին
հանձնել:
Երբ կռվում էի վագրի հետ անահ,
հովազի բուկը սեղմում անխնա,
ինչու՞ չտվիր ինձ վայել մի մահ:
Թե՛, տեր-բնություն, քեզ դուր
է գալիս,
որ էշն առյուծին քացի է տալիս...

# Քնիս մեջ...

ԵՐՎԱՆԴ ՊԵՏՐՈՍՅԱՆ

Տեսա հանկարծ՝ բոցի մեջ,
Վառվում էր գիրքս էջ առ էջ:
Աչքերս լայն բացեցի,
Հոնգուր-հոնգուր լացեցի:
Մայրս արագ մոտեցավ,
Լացիս պատճառն իմացավ:
Գրկեց ինձ ու համբուրեց,
Հետո գիրքս մոտ բերեց:
Չկար վառված ոչ մի էջ,
... Դա եղել էր քնիս մեջ:

ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ

# Պապի պատասխանը

Մի օր փորձեց պապին
Նեղը գցել տղան.
— Պապի՛, ինչու՞ մարդիկ
Երկու ականջ ունեն
Ու միայն մի բերան:
— Պարզ չէ՞, որ շատ լսեն
Ու քիչ խոսեն, որդի՛,
Որ հասկանան գինը
Կարճ ու կտրուկ խոսքի:

# Կատվախաղ

Մի չաղլիկ տղա
Իրենից փոքրին,
Հրում, հրմշտում,
Հետն էլ ժպտում է,
Իբրև՝ կատակում:
Քաշեց, քաշքշեց,
Ցած գցեց նրան
Ու նստեց վրան:

— Այդ ի՞նչ ես անում,—
Մի անցորդ տեսավ,
Բարկացավ սաստիկ:
— Դու մի՛ վախենա,
Կատակ եմ անում,
Կատակ, ա՜յ տատիկ:
— Տղա՛ս, ի՞նչ կատակ,
Ախր, այդ խեղճին
Ճզմեցիր քո տակ:
Խփում ես ուժգին,
Հետն էլ ծիծաղում.
Այդպես կատուն է
Մկան հետ խաղում...




ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15. Կարմիր բանակի փողոց № 15: Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

## № 6 • ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ • 1982



Շապիկի առաջին էջը՝ ԶԱՎԵՆ ՍԱՐԳՍՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝
ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝ ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատ. քարտուղար), ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ.

Գեղ. խմբագիր՝
Ա. ԿԻԼԻԿՅԱՆ
Տեխ. խմբագիր՝
Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ
Վերստուգող սրբագրիչ՝
Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Հանձնված է արտադրության 15.3.1982 թ., Ստորագրված է տպագրության 5.1982 թ.: ՎՖ 058119: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16, Տառատեսակ՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 3,9 պայմ. մամ., 3,1 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 64562: Պատ. 708: Գինը՝ 15 կ.:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան, Օրջոնիկիձեի պող. № 2:

Типография Издательства ЦК КП Армении, Ереван, пр. Орджоникидзе, 2.






Փոքրիկ գնորդը ի՞նչ գնեց խանութից:

№ 5 ՊԱՏԱՍԽԱՆ. № 5

1922 1982 60











## ԱՐԱՅԻ ԱՅԲԲԵՆԱՐԱՆԸ

*ԳԵՎՈՐԳ ՋԱՐԵՆՑ*

Դասերից հետո
Արան եկավ տուն,
Այբբենարանը
Պահեց դարակում:
Մայրը այս տեսավ,
Նախատեց որդուն.
— Արա՛, ինչու՞ չես
դասդ պատրաստում:
— Մայրի՛կ, իզուր ես
Վրաս բարկանում,
Մեր ուսուցչուհուց
Շա՞տ ես հասկանում:
Նրան դպրոցում
Խոստացել եմ ես,
Գիրքս միշտ պահել
Աչքի լույսի պես:

## ԾԻՏՆ ՈՒ ԱՄՊԸ

*ՎԱՂԻՆԱԿ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ*

Հողն էր զարթնել
Խոր քնից,
Առուն ելել
Իր հունից:
Ծիտը թռավ
Ափից-ափ,
Ասաց.— Լսի՛ր,
Գոռո՛զ ամպ,
Հերիք չէ՞ դու
Գոռգոռաս,
Այգու վրա
Նորահարս:
Հեռու՛ տար քո
Սև թևը,
Թող որ շողա
Արևը,
Թող որ այգին
Զորանա,
Ու աշխարհը
Քաղցր մրգով
Լիանա: